**1917** **№ 34—ՍԵՊՏԵՄԲ.-ի 3** ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէկ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ *տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.*
*Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.*

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ *Թիֆլիս, Արասարգսեան հրապար. № 7.*
*Հեռախօս № 29.*

*Պոստի հասցէն.—* Тифлисъ, „Амбавaберъ", Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ *տողին 10 կոպէկ.*

*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից*
*Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:*

*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում.*

*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ԶՍՊԵՑԷ՛Ք ԱԽՈՐԺԱԿՆԵՐԸ

*Անդրկովկասում ապրող ժողովուրդների փոխյարաբերութեան հարցը պէտք է լուրջ մտահոգութիւն պատճառի մեր հասարակական ու քաղաքական գործիչներին ու կազմակերպութիւններին։*

*Ոչ մէկ տեղ, ոչ մէկ անկիւն Ռուսաստանի մէջ այնքան այլազան և այլատեսակ ցեղերի խառնուրդ չի ներկայացնում, որքան Անդրկովկասը։ Այստեղ ապրող ժողովուրդների ազգային տենչանքները և քաղաքական հետապնդումները բոլորովին իրարու հակոտնեայ են և մէկմէկու խաչաձեւող։*

*Որպէսզի այդ ազգութիւններից մին կարողանայ իր քաղաքական թագուն իղձերը իրագործել, հարկաւոր կը լինի նրան կոխոտել միւս ազգութիւնների ցեղային ձգտումները և նրանց գետնահարուած իրաւունքների վրայից հասնել իր տենչանքին։ Կայ նաև տիրապետութեան և ազգային ույժերի զօրեղութեան խնդիրը։ Այդ տեսակէտից էլ եթէ դիտելու լինենք, պիտի տեսնենք որ գրեթէ Անդրկովկասի գլխաւոր ազգութիւնները թուի, որակի և ազգային ույժերի տեսակէտից համահաւասար մի ստուարաթիւ ուժ (?) տիճան են ներկայացնում։ Ուրեմն գրեթէ հաւասարակշռուած ույժերի բաղխումը առաջ պիտի բերի մի ահաւոր աղէտ, անաւոր՝ ոչ միայն այդ բաղխման ենթակայ եղող ույժին, այլ և նրա պատճառին՝ որ կամեցել ու ծրագրել է այդ։*

*Բոլորովին այլազան քաղաքական ձգտումներ բովանդակող Անդրկովկասը մի հրաբխային մթնոլորտ է, որը բոցավառելու համար առանձին ծանր աշխատանքի կարիք չկայ։*

*Անշուշտ այդ հրաբուխի լաւաները և հրկիզող նիւթերը առատօրէն և ամենից աւելի պիտի ծաւալուին հայութեան վրայ. ամենից աւելի դաժան և անողոք մի ճակատագրից հալածուած, հիւծուած ու ամեն կողմից վիրաւորուած այդ ժողովուրդը պիտի լինի գլխաւոր նոխազը այդ աղէտին։*

*Եթէ երբէք Անդրկովկասի ճակատը պատռուեց և արեւմտեան ճակատի ահեղ կացութիւնը արձագանգ գտաւ այստեղ, այն ժամանակ հայ ժողովրդի գոյութեան վերջին բաժակն էս պիտի լցուի և Անդրկովկասի գեղածիծաղ երկիրը պիտի լուացուի արեան բաղանիքներով։*

*Ո՞վ չգիտեր, որ ճակատի պատռուելուն ակնդէտ սպասող բազմաթիւ տարրեր կան հոս, թիկունքը քանդող աւազակախմբերը, զօրաճակատի կանակը ահարեկող քրդական հրոսակները, որոնք օր ու գիշեր տքնում են առաջ բերել նախանշը և երկիրը մատնել սարսափելի աւերածութեան ու կործանման։*

*Պէտք է միանգամ պարզ լինի ամենքին, որ կովկասեան ճակատի պատռուիլը և թշնամու ներս խուժումը, ջնջում ու կործանում է առաջ բերում Կովկասի բոլոր ժողովուրդներին. եթէ ամենից աւելի տուժող պիտի լինի այս կամ այն ժողովուրդը, բայց նրա մահը պիտի հիմնուի շատ մահերի վրայ և արիւնը երկրի բոլոր անկիւններից ու վայրերից հաւասարապէս պիտի հոսի։*

*Աւերածութեան մոխիրը բոլոր տնակներից պիտի բարձրա-*

նայ և հրդեհը ամենքի տունը պիտի լափէ հաւասարաչափ։

Ոչ մի օգուտ քաղաքական այն ձգտումները, որ կապուած են այս կամ այն տարրի կողմից ռազմաճակատի պատռումին հետ. ոչ մի իրական բաւարարութիւն այն արիւնալի ողբերգութիւնից, որին բաղձում են մութ անկիւններից։

Եթէ կայ առողջ տրամաբանութիւն և հայրենասիրութեան ոգի Անդրկովկասեան բոլոր տարրերի մէջ, եթէ համապետական ձգտումը ազգային կեանքի ապահովութեան գլխաւոր միջոցը նկատուի, այն ժամանակ ոչ ոք պիտի հանդուրժի հրդեհ առաջացնել և հրահրել քնած գազանի կատաղութիւնը։

Անդրկովկասում ապրող բոլոր ժողովուրդների ապահովութիւնն ու երջանկութիւնը միմիայն կապուած է Ռուսաստանի փրկութեան և յեղափոխական ներկայ կառավարութեան ոյժին հետ։

Որքան հաստատուն լինի մեզանում կառավարական ոյժը, որքան կենտրոնական քաղաքական օղակը շաղկապուած լինի երկրում ամուր կռուանների հետ, այնքան թոյլ կը լինի մութ տարրերի ակռաների կրճտումը և վայրագ ախորժակների բաւարարութիւնը։

Մութ տարրերի ակռաները պէտք է ջախջախել, ինչպէս օձը իր բոյնին մէջ. հիմնիվեր խորտակել պէտք է այն բոլոր ոյժերը, որոնք ձգտում են խրամատ առաջացնել թիկունքի ու ճակատի միջև և լարել ազգամիջեան յարաբերութիւնները։

Աւազակութիւնը երկրի ներսում և քրդական շարժումները երկրի սահմաններում՝ թիկունքը քանդող և ներքին կազմալուծում առաջ բերող երևոյթներ են, և ամէն հայրենասէրը, ամէն աշխատաւորը կամ քաղաքացին պիտի հանդուրժի աչքափակ մնալ այդ չարաբաստիկ երևոյթների դիմաց, ամէն հայը, ամէն թուրքը, ամէն վրացին պիտի ուղէ որ կրկնուին ու խորունկ արմատներ ձգեն այդ վնասակար շարժումները՝ եթէ նրանց մէջ երկրի փրկութեան առողջ դատողութիւնը չի մեռել։ Եւ եթէ այդ այդպէս է և քրդական շարժումը, աւազակութիւնը, մութ ոյժերի պրովոկացիան միևնոյն ժամանակ շարունակւում են, նշանակում է մեր երկրի կառավարութեան ուսերին, մեր վարիչների վրայ մի մեծ պատասխանատուութիւն է ընկնում, որովհետև նրանք ընդառաջ չեն գնում թիւրք, հայ, վրացի քաղաքացիների արդար տենչանքներին և քաղաքական առողջ ցանկութիւններին։

Յատուկ քննադատելի է Անդրկովկասի իշխանութիւնը իր կրաւորական վերաբերմունքի համար, հանդէպ այն խլրտումներին, որոնք զարգանալով հետզհետէ մօտ ապագային կարող են արհաւիրք առաջացնել։

Ինչ խօսք որ տեղական ազգութիւնների բանիմաց տարրերն են պիտի օգնեն իշխանութեան՝ երկրում կարգ հաստատելու և զօրաւոր կառավարութիւն ստեղծելու գործում։ Անդրկովկասի հայ, թիւրք, վրացի քաղաքական գործիչների և հոսանքների վրայ մի մեծ պարտականութիւն կայ, այդ երկրի խռովութեան և ազգամիջեան ընդհարումների զսպման տեսակէտից։

Քաղաքական այդ հոսանքները և գործիչները - ինչ ազգութեան էլ պատկանելիս եթէ լինեն, պիտի իրենց նեղ, ազգային թագուն տենչանքները առժամապէս զսպեն յանուն ընդհանուր երկրի և հայրենիքի փրկութեան։

Իւրաքանչիւր նեղ ազգային և դասային ախորժակ, իւրաքանչիւր եսասիրական և անհաշիւ ձեռնարկ կարող է մի հրդեհ առաջացնել և կործանել մեր գեղեցիկ հայրենիքը։

Անդրկովկասեան բոլոր ազգերի և դասակարգերի փրկութիւնն ու երջանկութիւնը, ընդհանուր հայրենիքի փրկութեան մէջն է, այս գաղափարը պէտք է տարածել և ժողովրդականացնելով դարձնել տիրական ամեն մէկ քաղաքացու հոգում։

Եթէ այս գաղափարը միանգամ ընդմիշտ դառնայ տիրական և իշխող մեր հոգիներում, այն ժամանակ ամեն մի փոքրիկ խլրտում, ամեն մի մութ ձեռնարկ, որ կարող է ազգամիջեան կրքերը գրգռել և հրդեհ առաջացնել, պիտի խեղդենք և պիտի սպանենք տեղնուտեղը։

Եւ համայն հայրենիքը որքան շնորհակալ պիտի լինի Անդրկովկասից, երբ վերջինս մինչև վերջին շունչը պիտի ջանայ մէկ սիրտ, մէկ հոգի կառչած միայ համերաշխութեան տաճարին և վանել իրանից բոլոր աղէտաբեր և վնասակար ախորժակները։

Մ. Թ.

---

# ԻՆՉՈ՞Ւ ՀԱՅԵՐՍ ԴԺԲԱԽՏ ԵՆՔ

Հայաստանի աշխարհագրական դիրքը և քաղաքական մըթնոլորտը այնպիսի աննպաստ և ձախող պայմաններում են դասաւորուած, որ դարերից ի վեր ստիպել են հայ ժողովրդին դիմել օտար աշխարհներ և ապաստանել օտար հորիզոնների տակ։

Ամեն անգամ երբ դրացի մահմեդական բարբարոս ժողովուրդները յարձակուել են մեր երկիրը ասպատակելու, նրանց գազանութիւններից ձերբազատ եղած ժողովրդի բեկորները հեռացել են բնաշխարհից և ապաստան գտնելով մի հեռաւոր անկիւն, իրենց բնական ընդունակութիւնների շնորհիւ կարողացել են տնտեսապէս առաջադիմել և նախանձելի դիրք ստեղծել իրենց համար։

Հայկական գաղութները բազմաթիւ են և բազմաքանակ. նրանք գտնւում են թէ հայրենիքին մօտ եղող երկիրներում, ինչպէս Վրաստանում, Պարսկաստանում և թէ հեռաւոր վայրերում, ինչպէս Ամերիկա, Եգիպտոս ևն։

Հայ ժողովուրդը իր հայրենիքի լեռնային բնութիւնից ժառանգել է տոկուն և երկաթեայ նկարագիր, ընդունակ ամեն տեսակ աշխատանքի և կենցաղի։

Հայրենիքի բնութեան գեղեցկութիւնը և այն արիւնոտ ողբերգութիւնը, որ շարունակ անցել է հայ ժողովրդի գլխով, նրա մէջ ստեղծել են հայրենասիրութեան մի ջերմ և բաբախուն սիրտ և այդ սիրտը ամեն տեղ և ամեն հորիզոնի տակ զգացուել ու տառապել է հայրենիքի տառապանքով և ապագայ յոյսերով։

Սակայն Հայաստանի քաղաքական վիճակի տեսակէտից գաղթականութիւնը՝ եղած և է մի սոսկալի չարիք։ Եթէ որևիցէ ժամանակ, բաղդի բարեյաջող կարգադրութեամբ հայկական հարցը վճռուի յօգուտ մեզ և իրականանան հայ ժողովրդի վարդագոյն ակնկալութիւնները, ամենամեծ և ամենակարդինալ մտահոգութիւնը այդ ժամանակ պիտի կազմի երկրի ժողովրդի բազմացման խնդիրը։

Հայկական հարցի դարաւոր և երդուեալ թշնամիները ամեն անգամ աշխատել են բնաջնջել մեր ցեղը, գաղթեցնել ու որևէ միջոցով նուաղեցնել նրան, այդպիսով ջուրը ձգելու համար հայկական դատը։ «Հայաստանը առանց հայի» լոզունգը իր արիւնոտ պատմութիւնն ունի իր ետևը. այդ լոզունգի հեղինակները ոչ միայն արիւնախում օսմաններն են եղած, այլ քրիստոնեայ-քաղաքակիրթ ազգերի քաղաքական մի շարք ներկայացուցիչները։ Վերջինների ոճրադաւ ծրագիրները գործադրել են առաջինները երկաթով և արիւնով։

Հայկական վերջին ահռելի ջարդերի պատճառները նոր չեն և ներկայ պատերազմի ընթացքին հայ ժողովրդի բռնած դիրքից չըբղխեցին։ Ջարդերի պատճառներն ու ծրագիրները շատ հին են և ներկայ պատերազմը միայն մի առիթ եղաւ, մի նպաստաւոր միջոց նրանց իրագործման։

Մեր նպատակը այստեղ հայկական եղեռնի պատճառներն ու պատմութիւնը անել չէ բնաւ, մենք միայն մի ակնարկ ձգեցինք ցոյց տալու համար այն գլխաւոր շարժառիթը, որ պատճառ դարձած է այս ցրուած ու վիթխարի գաղթականութեան, որ մենք այսօր ունինք հեռաւոր ու մօտաւոր վայրերում։

Հայկական այդ գաղութներից շատերը դարերի ընթացքում այլասերուել ու օտարացել են. այդ բանի մէջ ամենագլխաւոր դերը խաղացել է անշուշտ հայ ժողովրդի նմանողական զօրաւոր յատկութիւնը։ Հայը դիւրաւ ընդօրինակող է և ընկալուչ այն բոլոր ազդեցութիւններին, որ միջավայրը տալիս է։ Նա հեշտութեամբ և քիչ ժամանակուայ ընթացքում կարողանում է սովորել օտար լեզուները, նիստ ու կացը, սովորութիւնները և թափանցել այն հոգեբանութեան ու ընկերային պայմաններին, որի մէջ ապրելու է ստիպուած ինքը։

Վաճառականութեան, առևտուրի ու մտաւոր զարգացման ասպարէզներում առաջադիմելու ձգտումը՝ հայութեան մէջ աւելի է զարգացրել նմանողութեան բնազդը։

Օտար երկիրներում ու կուլտուրայում առաջանալու և ապրել կարողանալու համար, նմանողութեան և ընդօրինակութեան այդ զօրաւոր ընդունակութիւնը անշուշտ մեծ առաւելութիւն ու բարիք է հայի համար. բայց ազգային ոգու խաթարման, ցեղային ժառանգութիւնների (լեզուի, աւանդութիւնների ևն.) այլասերման գործում, այդ յատկութիւնները մի մի պատուհաս են եղած և սոսկալի աւերներ գործել ու գործում են այսօր։

Այդ է պատճառը, որ նոյնիսկ մայր հայրենիքին մօտիկ եղող գաղթավայրերի հայութիւնը այլասերուել է մեծ չափով և օրհասական ջանքեր է թափում ցեղին կապուելու և ամուր կառչելու (օրինակ՝ վիրահայեր)։

Մեր դրացի թիւրք ժողովուրդը եթէ համեմատելու լինենք մեզ հետ, այլասերման տեսակէտից շատ բարձր մակարդակի վրայ են գտնւում։ Նրանք որտեղ և ինչ հորիզոնի տակ էլ գտնուելիս լինեն, դիւրաւ չեն պոկւում մայր-ցեղեց և չեն ենթարկւում ապազգայնացման։ Դրա գլխաւոր պատճառները կայանում են նրանում, որ թիւրքերը համեմատաբար աւելի դանդաղ են ընդունում ժամանակակից կուլտուրան և նրանց մէջ խիստ տկար են ընդօրինակութեան և նմանողութեան յատկութիւնները։

Անշուշտ կան նաև ուրիշ պատճառներ ևս, օրինակ, թիւրք ժողովուրդը աւելի խմբուած է և շատ քիչ, համեմատաբար մեզ հետ, ենթարկուած է կոտորածի ու տեղահանութեան։ Բայց փաստը մնում է միշտ փաստ. թիւրք ժողովուրդը աւելի ամուր է կառչած իր ցեղային սովորութիւններին, լեզուին ու աւանդութեան քան հայերը։

Հայ ժողովրդի մէջ ապազգայնացման միտումները բղխում են նաև նրա ֆիզիքական-ցեղագրական յատկութիւններից։ Դարերի ընթացքում շարունակ շփման ու բաղխման մէջ լինելով բազմաթիւ ժողովրդների հետ, հայերս բազմաթիւ յատկութիւններ ենք ընդունել և արեան, ազգակցութեան տարբեր խառնուրդներ ստացել։

Տարբեր ժողովուրդներից ստացած արեան խառնուրդը, մեր նկարագրի մէջ առաջ է բերել բազմազան գծերը։ Այդ է պատճառը, որ այս րոպէիս հայ ժողովուրդը զտարիւն մի ամբողջութիւն չէ և Հայաստանի տարբեր գաւառամասերում նա երևան է բերում իմացական ու ֆիզիքական մէկը միւսից բոլորովին տարբեր ու հակոտնեայ ընդունակութիւնները։ Այս երևոյթը առաջացնող պատճառներից մէկն էլ կարելի է համարել Հայաստանի աշխարհագրական առանձնայատուկ պայմանները և դիրքերը։

Մեր ժողովրդի քաղաքական և հասարակական բարգաւաճման գործում, «խառնարիւնութեան» երևոյթը չափազանց մեծ սակար և աղէտալի դեր է խաղացել։ Մեր ներքին անմիաբանութեան, պառակտման, անհամերաշխութեան և քաղաքական տհասութեան պատճառների պատճառը կարող ենք համարել հայ ժողովրդի երակներում հոսող արեան անզտութիւնը և նրա արդիւնքը եղող մեր նկարագրի բացասական յատկութիւնները։

Թ.

# ԸՆԿԵՐԱՅԻՆ ՅԵՂԱՇՐՋՄԱՆ ՕՐԸ

## Ա.

Ազատ մրցակցութեան ասպարէզը՝ բացուած օրէն ի վեր եթէ նկատի առնենք այն հսկայական զարգացումը, որ ի յայտ եկած է ճարտարարուեստի և առհասարակ քաղաքակրթական կեանքի ամեն երևոյթներուն մէջ, կը տեսնենք որ յառաջդիմութեան գերագոյն միջոցը կը հանդիսանայ անիկայ։ Տասնըիններորդ դարը այնքան յառաջդիմութեան մէջ քայլեր նետած է, որքան նախորդ դարերը հաւաքաբար։ Ուրեմն ազատ մրցումը՝ քաջալերելով մարդուն մէջ ձեռներէցութեան ոգին, կազմակերպելու նախաձեռնութիւնը, ստեղծելու ընդունակութիւնը, աւելի շատ՝ արդիւնաբերելու, աւելի լաւը՝ մատչելի կերպով մատակարարելու, աւելի շահելու եռանդը կը զարգացնէ։

Ազատ մրցումը դարձնելով բարեկեցութիւնը տեսակ մը մրցանակ ամենէն ճարպիկին, ամենէն ընդունակին և կեանքի կռուին մէջ լաւագոյն կերպով դիմացողին, կը նպաստէ մարդկային յառաջդիմութեան և քաղաքակրթական պէտքերու սուր բազմապատկումին կը հասնի առատօրէն և անվնաս, ոչ միայն կը հասնի զգացուած պահանջներուն, այլև նոր նրբացումներու և նոր պահանջներու զարկ կու տայ։ Մատուցումի և պահանջի մէջտեղը կենալով ազատ մրցումը տնտեսական կեանքի ամենահզօր ազդակը կը դառնայ և նորմալ պայմանները պահելու պարագային ոչ մատուցումի, ոչ ալ պահանջի տագնապ կստեղծուի։

Ուրեմն ահա այս ազդակով՝ Ֆրանսական Յեղափոխութենէն յետոյ, երբ մարդկային իրաւունքներու, քաղաքական ազատութեան հիմքերը կը դրուին, քաղաքակրթութիւնը կսկսի անարգել յառաջդիմել։

Յայտնի է, թէ մրցման ամենամեծ ազդակը ժամանակիս տնտեսական-արդիւնաբերական կեանքի մէջ՝ մեծ դրամագլուխն է. նոյնիսկ դրամագլուխ մը, որ ոչ թէ անհատներու, այլ ընկերութիւններու, շատ մը դրամագլուխներու համախմբման գործ է. հազարներու համախմբումին կը յաղթէ միլիոններու համախմբումը, միլիոններուն՝ միլիարդներու համախմբումը։

Դրամին ընկերանալով անհատական նախաձեռնութիւնը, ինչպէս որ յիշեցի վերը, կը գործէ հրաշքներ, որովհետև պէտք չէ մոռնալ, որ եթէ դրամագլուխը մասնաւոր սեփականութիւն չըլլայ, այլ ըլլայ համայնական սեփականութիւն (օր. պետական) չի կրնար մրցման մտնել մասնաւորի դրամագլխին հետ, որովհետև այս վերջինին մէջ շահի կամ շահակցութեան կիրքը և արդիւնքի հրաշքներ գործի ղեկավարներուն տնտեսութեան գործել կու տայ։ Մի քանի օրինակներ յիշենք։ Միթէ կարելի է համեմատել այն երկիրները, ուր երկաթուղին պետական է և այն երկիրները, ուր մասնաւոր ընկերութիւններու գործ (օրինակ Ամերիկայի մէջ). վերջինիս մէջ, պիւրոքրատը չէ որ կը գործէ միայն ամսականին հետամուտ, այլ շահագրգռուած դրամատէրը, անկէ վարձուած պաշտօնեան, որ յառաջդիմութեան յոյս ունի,

ճամբորդները աւելի քաղաքավարի, աւելի հանդստաւէտ պայմաններ կը գտնեն, քան չինովնիկական դէմքեր և ախոռաձև վակոններ։

Նոյնպէս ոստիկանութիւնը։ Ամերիկեան գաղտնի ոստիկանների համբաւը յայտնի է, և այդ պարզ այն պատճառով, որ այդ հռչակուածները ազատ ասպարէզի տէր մարդիկ են մրցման մէջ և ոչ թէ ամսականաւոր պաշտօնեաններ *)։

Ես չեմ ուզեր այս կարճ յօդուածիս մէջ երկար մէջբերումներ ընել, արդէն այս տեսակէտները գիտականօրէն ապացուցուած տեսութիւններ են, ես միայն կուզեմ հետեւութիւններ դուրս բերել։

Ուրեմն մօտաւոր ակնարկ մը կամ անդրադարձում մը ունեցանք տնտեսական կեանքի մէջ։ Անհատական նախաձեռնութեան և լաւագոյնը արդիւնաբերելու համար իրարու հետ մրցման ունեցած օգտակարութեան մասին յառաջդիմութեան համար։ Ասոր արդիւնքը կըլլայ նաև աժան արդիւնաբերութիւնը, որ վայելքի ամենէն անմատչելի նիւթերը հանրութեան սեփականութիւն կը դարձնէ և ատիկա մեքենային միջոցաւ։

Բ.

Ահաւասիկ քաղաքակրթական ամենէն հսկայ օժանդակներէն մին կամ նոյնիսկ կարելի է ըսել միակ խորհրդանիշը որ յառաջդիմութեան մէջ կընկերանայ մտքին և կը փոխարինէ նիւթական ուժը, կամ կենդանական միսը։

«Անիծեալ ըլլայ այն մարդը, որ առաջին անգամ ըսաւ այս իմս է», ըսաւ խորհող մը, և մեծ Մտածողը անիծեց այն մարդը, որ առաջին անգամ «շրջափակ մը քաշեց հողամասի մը շուրջ և ըսաւ թէ այդ հողը իրեն կը պատկանի»։

Սակայն գիտեցէք, որ կաղացող յառաջդիմութիւնը այդ օրէն սկսաւ շիտակ ու վճռաբար քալել, այդ անյիշատակ ժամանակներուն, երբ մասնաւոր սեփականութիւնը չկար, մարդիկ դարձեալ ընկճուած էին ծանր աշխատանքի ներքև, միտքը փայլատակած էր իրենց գանկերուն տակ և կը տառապէին, պաշտպանուելու, պատսպարուելու և երջանիկ ապրելու, թագաւորելով ապրելու հրդեհը կար կրծքերնուն մէջ, սակայն որքան դանդաղ կընթանար քաղաքակրթութիւնը։ Մասնաւոր սեփականութիւնը դարձաւ առաջին ազդակ՝ մարդկային քաղաքակրթութեան բնաշրջումին, սեփականութեան զգացումն է որ վառեց մարդուն մէջ նախաձեռնութեան տենդը, աշխատելու ոգին. մեզի համար մութ է այն համայնքի զգացումը, որու համար մարդիկ կը մեռնէին Սպարտայի մէջ, սակայն մեզի յայտնի է անոր ժամանակակից Ատտիկէին տուած քաղաքակրթական մեծութիւնը։ Անոր գեղարուեստի և գիտութեան ու յառաջդիմութեան զարկը՝ որու վրայ Հռոմ և Եւրոպա իրենց քաղաքակրթական շէնքը կառուցին։

Մասնաւոր սեփականութիւնը ձեռներէցութեան ոգի մըտցուց մարդուն մէջ, շահու և դիւրութեան հետամտութիւնն է որ մեքենան հնարեց. և ապագայ մարդկութիւնը, բոլոր խորհողներու բացագանչութիւններուն դէմ պիտի գոչէ՝ «օրհնեալ ըլլայ այն մարդը, որ մեքենան հնարեց»։

Ճիշտ է որ մեքենաներու առաջին հնարիչները գիտուններ էին և գիտութեան սէրը վառեց զիրենք, բայց մեքենաներու կատարելագործումը ժամանակի ընթացքին և գիւտերը՝ ներկայ դարու, շահու, ճարտարարուեստի և մասնաւոր սեփականութեան արդիւնք են։

* * *

Մինչև հիմա ես բնաւ հոգ չըրի, թէ գուցէ սխալ կը հասկցուիմ, սակայն այժմ կուզեմ բացատրուիլ։ Ես բնաւ ուրացող մը կամ կոյր մը չեմ չտեսնելու համար մասնաւոր սեփականութեան չարիքները, մարդոց տառապանքը՝ մրցակցութեան մէջ. փոքր դրամագլխի կուլ գնալը, գիւղացութեան և մանր արհեստաւորութեան սեփականազրկումը, մրցման չդիմացող, նուազ ճարպիկ, մարմնապէս թէ հոգեպէս. տկարներու ոտնատակ երթալը և վերջապէս ամեն բան որ չարիք է և կը ծնի ներկայ ընկերական կեանքի գնացքէն։ Այդ ամենը ճիշտ է։ Սակայն ինչպէս Ա. գլխու սկիզբը անդրադառնալով «դէպի նախնական կեանք» վարկածին, ըսի թէ անկարելիութիւն մըն է անիկա, նոյնքան ալ անկարելիութիւն է այդ ամեն երեւոյթներու առաջքը առնել առանց վնասելու քաղաքակրթութեան, որ ի վերջոյ իր լրումին մարդկային միակ երջանկութիւնն է։

Մասնաւոր սեփականութեան վերացումը, արդիւնաբերութեան միջոցներու համայնացումը վնասակար է ներկայիս, որովհետև մենք համոզուեցանք կարծեմ, թէ քաղաքակրթութեան զարկ տուողը, յառաջդիմութիւնը խոյացնողը մասնաւոր շահու ոգևորութիւնն է։ Արդ մինչև որ քաղաքակրթութիւնը չէ կատարելագործուած, մինչև որ մարդկային առաջդիմութիւնը իր հանգրուանին չէ հասած, մինչև որ մարդիկ տակաւին ֆիզիքապէս կը բաժնեն աշխատանքը կենդանիներուն և բնութեան միւս ուժերուն հետ, զանոնք հպատակեցուցած են, տակաւին կարելի չէ հրաժարիլ առաջդիմութեան զարկ տուող ներկայ ընկերային կեանքէն, ներկայ դրութենէն։ Հասած չէ տակաւին ընկերային եղաշրջման օրը։

Լեւոն Թիւթիւնճեան

*) Մեր խօսքը ամերիկեան պաշտօնական ոստիկանութեան մասին չէ։

# ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՏԱԳՆԱՊԸ

Մոսկուայում գումարուած խորհրդակցութիւնը մի վայրկեան իր վրայ հրաւիրեց ամբողջ Ռուսաստանի ուշադրութիւնը։

Քաղաքական և ռազմական ծանր հարուածները ընդունող, ներքին դասակարգային կռիւների, օդային ֆրազների և անջատողական ձգտումների օրօրան ներկայացնող հսկայական պետութիւնը, մէկ ծայրից միւսը սրտատրոփ սպասում էր այդ խորհրդակցութեան ելքին։ Սպասում էինք, որ ահա պիտի պայծառանայ այն ահաւոր թուխպը, որ նստել է մեր երկրի պայծառ երկնակամարին։

Մոսկուայի խորհրդակցութիւնը սակայն, թերթերի հաղորդածի համաձայն, եղաւ զուտ քննադատական և նկարագրական մի ժողով, որի մէջ իւրաքանչիւր քաղաքացին իր պատկանած կուսակցութեան ակնոցով պատկերացրեց երկրի ծանր կացութիւնը, յեղափոխութեան տագնապը, արտաքին և ներքին խառնակութիւնները։

Այնտեղ զօրեղապէս իրար դէմ կանգնեցին երկու դասակարգեր՝ դեմոկրատական և կադետական. երկու դասակարգերի մտածողութեան կենտրոնը նոյնն էր երկրի ահաւոր կացութեան մասին, բայց միջոցների և գործունէութեան եղանակի տեսակէտից տարբերուեցին նրանց առաջադրած ճանապարհները։

Դասակարգային շերտաւորումների կողքին բարձրացաւ նաև զինուորական դասի ձայնը՝ յանձինս նախկին գերագոյն հրամանատար Կորնիլովի, Ալէքսէևի և ուրիշների։ Կորնիլովը նկարագրելով զօրքերի անկարգապահութիւնը և երկրին հասնելիք ռազմական ահաւոր հարուածները, պահանջեց կառավարութիւնից արմատական միջոցներ, այդ բոլորի առաջն առնելու։ Նա պահանջեց անկախութիւն պատերազմական գործերի մէջ և

մահուան պատիժ դասալիքների և հայրենադաւների վերաբերմամբ։

Մոսկուայի խորհրդակցութիւնից յետոյ դեռ չքաշեց երկու շաբաթ, մէկը միւսի ետևից աւելի ծանր և մահացու հարուածներ իջան Ռուսաստանի կրծքին։ Առաջին հարուածը գերմանացիների արշաւանքն էր արևմտեան ճակատում և նրա արդիւնքը եղաւ Ռիգայի անկումը։

Հարուածը շեշտակի էր խփուած. հարուածը Ռիգայից ուղղւում էր Պետրոգրադի վրայ։ Ռուսաստանը ապրեց ծանր ճգնաժամ և հեւհև սպասեց Ժամ. Կառավարութեան վճռական քայլին թշնամու դէմ ուղղուած։ Բայց դժբաղդաբար ի մեծ ուրախութիւն կատաղի թշնամիին՝ սկսուեց ներքին քաղաքացիական ահեղ մարտնչում։ Գերագոյն հրամանատար Կորնիլովը մի ակտով Ժամ. Կառավարութիւնից պահանջեց իրեն յանձնել երկրի զինուորական ու քաղաքական դիկտատորութիւնը։ Ուրիշ խօսքով նա հրաւիրեց Ժամ. Կառավարութեան հեռանալ ասպարէզից, ցրուել բանուորական և զինուորական խորհուրդները և երկրի իշխանութիւնը թողնել իրեն։ Պարզ էր Կորնիլովի նպատակը, —ստեղծել զինուորական խիստ դիկտատուրա և վերջ տալ նորածնուած յեղափոխութեան։

Կորնիլովին հետևում էին զօրքի մի մասը և զանազան հրամանատարներ։ Ժամ. Կառավարութիւնը յանկարծակիի եկաւ այս վճռական քայլին հանդէպ։ Նա մէկը միւսի յետևից հրատարակեց կոչեր քաղաքացիներին, բանակին, երկաթուղային և փոխադրական պաշտօնեաներին և հրաւիրեց նրանց բոլորուելու Ժամ. Կառավարութեան շուրջը և ընդդէմ գնալու Կորնիլովի հակայեղափոխական քայլին։

Պետրոգրադը յայտարարուեց զինուորական դրութեան մէջ, պաշտօնից հեռացուեցին կասկածելի գեներալներ և քաղաքական շատ գործիչներ։ Կերենսկուն տրուեց անսահման իրաւասութիւն երկրի քաղաքական և զինուորական գործերում։ Հրաման արձակուեց ձերբակալել Կորնիլովը և նրա կողմնակիցները։ Կորնիլովի գնդերը արշաւում են Պետրոգրադի դէմ. նա բանակի մէջ մեծ հեղինակութիւն է վայելում։

Խնդիրն այն է, որ այս րոպէիս Ռուսաստանը մոռացել է կատաղի և ահարկու թշնամին և իր ուշադրութիւնը կենտրոնացրել ներքին կռիւների և փոթորիկների վրայ։ Ներքին փոթորիկը աւելի ահաւոր է և աւելի ծանրաղէտ քան արտաքինը։ Թշնամին մեծ օգուտ է քաղում ներքին պայքարից և քայքայումից։ Թշնամու յաջողութիւնների աղբիւրը ներքին պառակտիչ օձն է։

Բոլոր այն զինուորական և քաղաքական յաջողութիւնները, որ Գերմանիան ունեցաւ վերջին երկու ամսում, յառաջ են գալիս Ռուսաստանի այն ալեծուփ և երերուն ղեկից, որով կամենում են ղեկել ամբողջ պետութիւնը։

Ղեկը քայքայուած է այն ձեռների մէջ, որոնք քաղաքական և պետական հասունութիւն չունին։ Ինտերնացիոնալիզմի ցաւագար երկրպագուները իրենց թունաւոր շունչովը ժանգոտել են մեր հայրենիքի ամբողջ մթնոլորտը։ Մեր խեղճ զինուորները վարակուած են այդ թոյնից և իրենք էլ անգիտակ ու կոյր գործիքներ են դարձել մի դաժան, աւերիչ բազուկի։

Սպասւում է մի ուժեղ և տիրական բազուկի, որ քայքայուած նաւին ուղղութիւն տայ և փրկարար մի շունչով վանէ վարակուած օդը։

Այդ փրկարար և ակնկալուած ուժը պիտի բղխի յեղափոխութիւնից, ժողովրդից։ Այդ ուժին շուրջը պիտի հաւաքուեն ամենքը և նրան պիտի լծուեն երկրի բոլոր տարրերը։

Այդ ուժը պէտք է արտայայտէ Ռուսաստանի կամքը, նրա կոխոտուած ու փշրուած հայրենիքի ցանկութիւնը։

Եթէ Ռուսաստանը կարողացաւ երևան բերել այդ կամքը, կարելի է վստահել երկրի փրկութեան, այլապէս միւս բոլոր քայլերը կիսամիջոցներ են սոսկ և ուշացած ցանկութիւններ միայն։

Կերենսկին փորձում է լինել այդ փրկարար ոգին։ Եթէ այդ ճշմարիտ է, այն ժամանակ կարելի է վստահ լինել, որ նա միայն կարող պիտի լինի անել այն, ինչ որ ցանկալին է և ինչ որ չեն կարող անել ուրիշները։

Ալ. Մանուկեան

# ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ԿՕՕՊԵՐԱՏԻՒՆԵՐԸ

## ԵՒ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ

Արևմտահայութեան մէջն ալ սկսած է զարգանալ կօօպերատիւ շարժումը։ Վանեցիներէն յետոյ սկսած են շարժիլ մշեցիները, ալաշկերտցիները եայլն։

Այդ շարժման, զարգացման ու յառաջդիմութեան մէջ մեծ դեր է վերապահուած Կ. Հ. Բար. Ընկերութեան։

Աւերուած Հայաստանի վերաշինութեան մէջ կօօպերատիւ քաղաքականութեան շնորհիւ է որ մենք ձեռք պիտի բերենք ամենակարճ ճանապարհով մեր երկրի տնտեսական վերականգնումը։

Կօօպերատիւները արևմտահայերու մօտ ներկայէն աւելի ապագայի խնդիր է և պէտք է որ խելացի միջոցներով մենք ձեռք բերենք այն՝ ինչ որ մեր երկրի տնտեսութեան հիմնաշէնքը պիտի կազմէ։

Բոլորն էլ շատ լաւ գիտեն, որ շնորհիւ Թուրք կառավարութեան գազանութիւններու, այժմ Թիւրքահայաստանը վերածուած է Ռոբինզոնեան կղզիի մը և այդ երկրի ապագայ բնակիչներուն տրուած է նոր Ռոբինզոններ լինելու վերածաղկեցնելու համար իրենց հայրենիքը։

Վաղուայ Ռոբինզոնը, այդ երկրի երէկուայ բնիկը, կորսնցուցած է իր բոլոր կայքը ու կարողութիւնը։ Իսկ վաղը երկիր վերադարձած պարագային, վերաշինութեան գործի առթիւ, նա պիտի գտնուի խոշոր հարցականի մը առջև։ Դրամ չկայ, տնտեսութիւն չկայ։

Բնական է, այդ գործին հետևելու համար, այժմէն իսկ մենք պէտք է հետապնդենք որոշ տնտեսական քաղաքականութեան։ Հիմնում՝ ու կազմակերպում կօօպերատիւներու, մանր վարկի ընկերութիւններու, փոխատու ու տնաշինական ընկերութիւններու և այլն։

Սակայն այդ ձեռնարկներու մէջէն ամենաանյետաձգելին և միաժամանակ ամենաարմատականը կօօպերացիան է։ Կօօպերատիւն է այն հիմնաշէնքը, որու վրայ պիտի կառուցուին միւսները։

Միայն կօօպերատիւներն են, որ իրենց լաւագոյն կազմակերպութեան պարագային պիտի յաջողին ամենաուժեղ և կազմակերպուած ու յարատև պայքար մղել սակաւաթիւ վաշխառուներու դէմ։

Կօօպերատիւներն են որ պիտի կարողանան միակ մրցակիցներ հանդիսանալ այդ չարաշահներու հանդէպ և դէթ առաջին տարիներին յաջողցնելով մատակարարել լաւ և աժան ապրանք իրենց յաճախորդ անդամներուն։

Արեւմտահայ Երեւանեան համագումարն ալ ընդունելով կոօպերացիայի խոշոր նշանակութիւնը ի մասնաւորի շեշտած է այդ հանգամանքը. «Նկատի ունենալով մէկ կողմէ երկրի տնտեսութեան կատարեալ քայքայումը ու դրամագլուխներու ոչնչացումը, միւս կողմէ շեշտելով այդ տնտեսութեանց ապագայ վերականգման մէջ կոօպերացիայի ունենալիք խոշոր դերը, շնորհիւ իր գործակցական և մանր դրամագլուխներով կազմուելու յատկութեանց» եւայլն։ Ապա կոչ կընէ որ փախստականները մեծ զարկ տան ու անդամագրուին կոօպերատիւներուն։

Ուժեղ կոօպերատիւի կազմակերպութիւնը կրնայ ապագայ Հայաստանի մէջ ոչ միայն շուկայի ամուր գիներ հաստատել և պայքարել սպեկուլացիայի դէմ, այլև պիտի կրնայ փոխանակութեան ասպարէզէն դուրս վանել բոլոր վաշխառուները։

Բայց ուժեղ կոօպերատիւ կազմակերպութիւն մենք կըստանանք միմիայն այն ատեն, երբ անոր կազմակերպութեան մէջ որոշ սիստեմ եւ շաղկապութիւն կը մտցնենք։

Այդ որոշ սիստեմը կարող է արտայայտուել հետեւեալ ձեւով։ Ամեն գիւղ և քաղաք կունենայ իր սպառողականը։ Ամեն մի գաւառի մէջ գտնուող այդ ազատ ու անկախ կոօպերատիւները ի մի գալով կընտրեն «Գաւառի Կոօպերատիւներու Միութիւն»-ը։ Նահանգի մը մէջ գտնուող գաւառային կոօպերատիւներու միութիւններն ալ ի մի գալով կը կազմեն «Նահանգի կոօպերատիւներու միութիւն»-ը, և վերջապէս ամբողջ երկրի նահանգներու կոօպերատիւ միութիւնները ի մի գալով կընտրեն իրենց խորհուրդը կամ կեդրոնը, որը պիտի լինի երկրի կոօպերատիւներու արտայայտիչը ու ներկայացուցիչը օտար երկիրներու շուկաներու մէջ։ Բնական է որ սպառողական կոօպերատիւներու գաւառային և նահանգային սահմանները յաճախ չպիտի համապատասխանեն վարչական բաժանումներու, այլ պիտի հետեւին առեւտրական կեդրոններու։

Համերկրեան կեդրոնը արտասահմանեան կեդրոններէն գնելով մթերքը պիտի փոխանցէ նահանգական միութիւններուն, ասոնք ալ իրենց կարգին իրենցմէ աւելի վար գտնուող գաւառային միութիւններուն, իսկ վերջիններս ալ գիւղայիններին, որմէ այլեւս ուղղակի կը փոխանցուի սպառողին։

Առեւտրական հրապարակն ալ ցարդ այդ ուղղութեամբ է գնացած։

Այդ սիստեմով կազմուած կոօպերատիւ կազմակերպութիւնները, նայած թէ ինչքան լաւ և կանոնաւոր են կազմակերպուած, այնքան և յաջող պիտի կարողանան տանել իրենց պայքարը։ Կոօպերացիան պէտք է լինի մեքենական կազմ մը, որ կոճակի մը սխմումով ամենայն կանոնաւորութեամբ և ամենայն ուղղութեամբ կարողանայ աշխատել։

Սպառողականներու կազմակերպութենէն յետոյ նկատելի համանման սիստեմով կազմակերպել և ուրիշ տիպի կոօպերատիւները, ինչպէս օր. արդիւնաբերողական, ապահովագրական, վարկային, տնաշինական և այլն։

Ուժեղ կոօպերատիւ կազմակերպութիւն ունենալու համար բացի որոշ սիստեմէն մենք շեշտեցինք նաև որոշ շաղկապցութիւնը։

Շաղկապցութիւնը ես կը հասկնամ զանազան տիպի կոօպերատիւներու փոխյարաբերութիւնը։ Այսպէս գիւղի և քաղաքի կոօպերատիւները իրար հետ լաւ մը շաղկապուած լինելու են, գիւղի բերքերը քաղաքի կոօպերատիւներու միջոցաւ ի վաճառ պիտի հանուին, իսկ փոխադարձաբար, քաղաքի արտադրութիւնները (բացի արտաքին հրապարակներէ եկածները, նաև հոն արհեստանոցներու մէջ պատրաստուածները, ինչպէս օր. կօշիկ, օճառ, կտաւ, չիթ եայլն) գիւղական կոօպերատիւներու միջոցաւ պիտի սպառուին, այդպիսով գիւղը ազատելով «չարչիներէ ու սալաֆչիներէ»։ Մի այլ շաղկապցութիւն այն է որ կոօպերատիւ փուռի քով կը կանգնի կոօպերատիւ ջրաղացը, կոօպերատիւ ճաշարանի կողքին՝ մսի, բանջարի և այլ ուտելիքներու կոօպերատիւը և այլն։

Իսկ այդ բոլորը ընելու համար այժմէն պէտք է պատրաստուել։

Բացի այդ ապագայ ծրագիրներէն կոօպերատիւը այսօր իսկ աւելի մեծ անհրաժեշտութիւն է ներկայ տնտեսական ճգնաժամէն դուրս գալու ու սպեկուլացիայի դէմ պայքարելու համար։

Զ. Կորկոտեան

(Շարունակելի)

# ՊՐՈՎԱԿԱՑԻԱ

Թիֆլիսում հրատարակուող „Возрожденіе" լրագիրը վերջերս զանազան յօդուածներ է տպում քրդերի և հայ-քրդական յարաբերութիւնների մասին։ Քաղաքական և դաւադրական բընոյթ կրող քրդական վերջին շարժումները վերոյիշեալ թերթը վերագրում է հացի և կենսամթերքների պակասութեան և եթէ աւազակ-քրդերին հաց տրուի, այն ժամանակ նրանք հանդարտ կը մնան և քրդական վտանգն էլ մեղմանում ինքնիրան կը վերջանայ։

Իսկ այն տեղեկութիւնները և հեռագիրները, որ տպւում են հայկական ու ռուսական մամուլում աւազակութիւնների և քըրդական շարժումների մասին, „Возрожденіе"-ի կարծիքով մեծ մասամբ յերիւրանք են և առաջ են գալիս Հայաստանը առանց քրդերի ու թիւրքերի հայկական քաղաքականութիւնից...։

Ինչպէս յայտնի է, քրդական աւազակութիւնները տեղի են ունենում Երեւանեան նահանգում և Տաճկահայաստանի այն մասերում, ուր նրանք ապրում են։ Այդ քրդերի մեծ մասը տաճկահպատակ ու պարսկահպատակ են, նրանք թրքահայերի նման չեն ենթարկուած երբեւիցէ թալանի ու կողոպուտի, ընդհակառակն իրանք են թալանել ու կողոպտել փախչող հայերի կայքն ու պաշարը. ուրեմն նրանք կենսամթերքի կողմից շատ աւելի բարեյաջող ու ապահով դրութեան մէջ են գտնւում քան հայերը, հետեւաբար հացի պակասութիւնից ապստամբուել և կռուել այն ժողովուրդը, որ իրանից աւելի չքաւոր է, այդ տեսակ դատողութիւնը միայն „Возрожденіе" թերթը խմբագրողների ուղեղում կարող է գոյութիւն ունենալ. եթէ քրդերը հացի համար են աւազակութիւն անում, ինչու չեն գնում այնպիսի վայրեր, ուր շատ հաց կայ, ընդհակառակն քրդերը այնպիսի տեղերի վրայ են յարձակւում, ուր համեմատաբար աւելի յետընկած ու անապահով վայր է ներկայացնում։

Հայ ազգաբնակութիւնը հեշտութեամբ կարող էր ոչնչացնել քրդերին, եթէ նրանց ոչնչացնելու ցանկութիւնը ունենար։ Ընդհակառակն հայերը աշխատել են լաւ հարեւանութիւն պահպանել խաղաղ և աշխատող քիւրդ ժողովրդի հետ։

Իսկ մի՞թէ զօրքի թիկունքը կտրել, նրա պաշարեղէնները թալանել, ճանապարհների հաղորդակցութիւնը խզել, հպատակութիւնն ընդունել և ապա զինուած դիմադրութիւն ցոյց տալ ապստամբութիւն և վտանգաւոր շարժում չէ։ Հազարաւոր փաստերով ապացուցուած է, որ աւազակ քրդերը գաղտնի յարաբերութեան մէջ են թրքական շտաբի հետ և կրում են գերմանական ձևի հրացաններ. Որտեղից ստացան քիւրդերը այդ տե-

սակ հրացան և այդքան ռազմամթերք, որ միայն կանոնաւոր զօրքը կունենայ։

Կովկասեան ռազմաճակատը պատռելու համար Թիւրք բանակը այնքան ույժ չունի, նա հիւծուած ու քայքայուած է։ Կովկասեան ճակատի պատռումը յառաջ բերելու համար Թիւրքերը դիմում են ուրիշ միջոցների և այդ միջոցներից էն գլխաւորը ռուս զօրքի ճակատի ու թիկունքի յարաբերութիւնը խզելն է։ Կովկասի ռազմաճակատը թիկունքին կապող ճանապարհները հենց նրանք են, որոնք այսօր վտանգուած են քրդական աւազակութիւններով և շարժումներով։ Իսկ զսպել աւազակութիւնը և չապահովել ռազմաճակատի հաղորդակցութիւնը՝ նշանակում է զարկ տալ Թրքական շտաբի ծրագրին...։

„Возрожденiе" թերթի յայտնած կարծիքների և մղած ագիտացիայի մասին չարժէ այլևս անդրադառնալ, որովհետև նրա գոյնը արդէն յայտնի է մեր ընթերցողներին, յայտնի է նաև թէ այդ թերթը ո՞ր ժառանգութիւնն է կազմում։

# Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Թեմիր-Խան-Շուրայից—Լիւդմիլա Կամարովսկուց յօգուտ հայ գերիների 10 ռ.։

Թիֆլիսի «Օազիս» ճաշարանում դրուած տուփից գոյացաւ 35 ր. 64 կ.։

### ՃԻՒՂԵՐ

Ալէքսանդրապոլի ճիւղի վարչութեան անդամներ ընտրուել են.—պ. պ. Գէորգ Մսիրեան, Արտաշէս Տայեան, Միսաք Ծատուրեան, Աշոտ Կարանեան և Աղէքսանդր Քուփալեան, որոնք Խորհուրդի կողմից հաստատուած են պաշտօնների մէջ։

## «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-Ի ՕԳՏԻՆ

Շնորհակալութեամբ ստացել ենք հետևեալ նուէրները. Յովհ. Գասպարեանից՝ 10 ռ., Յ. Շահնազարեանից՝ 2 ռ., Լևոն Փրիտոնեանից՝ 2 ռ., Արտեմ Փիփինեանից (Ջխար) 2 ռ., Ա. Բէկ-Յովսէփեանից՝ (Զաքաթալա) 2 ռ., բժ. Աւետիս Ռ. Քոչարեանից (Ցարսկիէ-Կալոդցի) 2 ռ., Տէր-Յովհաննիսեանից (Սարիղամիշ) 4 ռ.։

# Քրոնիկոն

Խնուսից հաղորդում են, որ Մուշից ու Խութից այնտեղ են հասել 107 նոր փախստական հայեր։

—Պարսկաստանից հաղորդում են, որ այնտեղ ռուսական ռուբլու արժէքը խիստ ընկել է։ Թեհրանում բացուել է նոր մէջլիսը։ Ուրմիայից սկսեալ մինչև Քրդիստանը, մեծ մասով ռուսահպատակութիւնն ընդունած քրդերը, ապստամբութեան դրօշ են բարձրացրել զօրքի թիկունքում։ Լուրջ և կատաղի կըռիւներ են տեղի ունենում քրդերի և ռուս զօրքի մէջև։

—Վանից հաղորդում են, որ այժմ Վասպուրականում ապրում են մօտ 23,000 ժողովուրդ, որից 21,000-ը հայ, 2000-ը ասորի։ Վան քաղաքում ապրում են մօտ 5000 հոգի։

—Տպարանային դժուարութիւնների պատճառով «Համբաւաբեր»-ի այս համարը երկու օր ուշ լոյս տեսաւ։

—Արևմտահայ Խորհուրդը դիմումներ է ստանում Ուֆայում, Բերեզովկայում, Սարատովում, Սիզրանում, Համամլում և Նիկոլսկում գտնուող հայ գերիներից, որոնք նկարագրելով իրենց ծանր վիճակը՝ խնդրում են ազատել։ Այդ առիթով Խորհուրդը որոշել է Պետրոգրադ ուղարկել մի պատգամաւորութիւն՝ գերիներին ազատելու նպատակով միջնորդութիւն յարուցանելու համար։

—Վանի հնագիտական արշաւախումբը, կազմուած պրոֆ. Ն. Ադոնցից և Աշխարհ-բէգ Լոռու-Մելիք-Քալանթարից մի ամսից աւելի յաջողութեամբ աշխատելով Վասպուրականում և հաւաքելով մեծաքանակ կարևոր նիւթեր՝ այժմ վերադարձել է Թիֆլիս մեկնելու համար Պետրոգրադ։

—Մի քանի ժամանակ առաջ Երևանի և շրջանի 300-ի չափ փախստական ընտանիքներ դիմել էին Թիֆլիսի ամերիկեան հիւպատոսին և նկարագրելով իրենց ծանր կացութիւնը, որ պետական նպաստը չէ բաւականացնում, աշխատանք չլինելը և սրանց դիմաց տիրող թանգութիւնը, խնդրել էին, որ ամերիկեան կառավարութիւնից դիւրութիւն տրուի իրենց Ամերիկա մեկնելու համար։ Հիւպատոսը հնարաւոր չէ գտել նրանց վերջին ցանկութեանն ընդառաջ գնալու և առաջարկել է իրեն ներկայացնել Կովկասում ապաստան գտած փախստականների աշխատանքի ընդունակութեանց մասին տեղեկութիւն, խոստանալով իբր հայանպաստ ընկ. ներկայացուցիչ, փախստականների համար տեղում աշխատանքի միջոց ստեղծելու նպատակով տրամադրել հարկ եղած գումարը։

—Անդրկովկասեան Առ. Կոմիտէն Կերենսկուն հեռագրել է որ Կոմիտէն գտել է միանգամայն նպատակայարմար՝ հացի գնի կրկնապատկումը և խնդրել է սահմանուած օրէնքը շուտով գործադրութեան մէջ դնել Անդրկովկասի վերաբերմամբ։ Այդ խընդիրը դեռ ևս ապրիլ ամսին դրուել է Առ. Կոմիտէի քննութեան և որոշուել հացի մենաշնորհ սահմանել։ Այժմ Անդրկովկ. Առ. Կոմիտէն խնդրում է Կերենսկուն Անդրկովկասում սահմանել հացի մենավաճառ։

—Գեն. Կորնիլովի դաւադրութեան առիթով Անդրկովկ. Առ. Կոմիտէն բոլոր նահանգական և շրջանային գործադիր կոմիտէներին ուղարկել է հեռագիր, որով յայտնում է, թէ Կորնիլովը և իր կողմնակիցները երկիրը դրին անսպասելի վտանգի մէջ և ստեղծեցին եղբայրասպան քաղաքացիական պատերազմ։ Ձեռք առած միջոցները ժամանակաւոր Կառավարութեանը հնարաւորութիւն տուին վերջ տալու դաւադրութեանը։ Անդրկովկ. Առանձ. Կոմիտէն լիակատար հաւատ է ընծայում Ժամ. Կառավարութեան գերագոյն հրամանատարին և հեծելազնդին ու գործում է յեղափոխական կազմակերպութիւնների հետ համերաշխ։ Հեռագրով մինիստր-նախագահին յայտնուած է լիակատար պատրաստակամութիւն՝ աջակցելու Ժամանակ. Կառավարութեանը նրա ներքին և արտաքին թշնամիների դէմ մղած կռուի միջոցին։ Անդրկովկ. Առ. Կոմիտէն հաւատում է, որ Ժամ. Կառավարութեանը ցոյց կը տայ, որ դուք նրա հետ էք. կոչ հրատարակեցէք գաւառների կոմիսարներին և ազգաբնակութեանը, որ հնազանդ լինեն Ժամ. Կառ. և նրա օրինական մարմիններին և պահպանեն հանգստութիւն։

—Կազանում հրատարակուող թաթարական «Դուրմուշ» թերթում տպուած է մի յօդուած այն մասին, թէ թուրքերը յետ են

գրաւել անգլիացիներից Բաղդադն ու Քութ-էլ-Ամարան։ Այս յօդուածը համարեա ամբողջութեամբ արտատպուել է Բագուի «Աչըք-Սէօզ» և Պարսկաստանում հրատարակուող մի քանի թերթերում։

Կովկասեան ճակատի զօրաբանակի ընդհանուր հրամանատարի շտաբը սրանով յայտնում է, որ վերոյիշեալ յօդուածն ամբողջապէս յերիւրանք է։

Բաղդադն ու Քութ-էլ-Ամարան անգլիացիների ձեռքին են, իսկ Կազանի «Դուրմուշ» թերթի և Բագուի «Աչըք-Սէօզ»-ի խմբագիրները պատասխանատւութեան են ենթարկւում նրա համար, որ իրենց հրատարակած թերթերում տեղ են տուել բացայայտ սուտ լուրերի, այլև այն յօդուածների համար, որոնք ուղղուած են մեր քաջամարտիկ դաշնակիցների՝ անգլիացիների դէմ։

Գնդապետ Զայոլսկի

—Կովկասում աւազակային յարձակումները քրոնիքական բնոյթ ստացած լինելով, գիւղերում գտնուած շատ զինուորներ և սպաներ անհանգստացել էին և մի քանի անգամ դիմել Անդր. Առ. Կոմիտէին, խնդրելով միջոցներ ձեռք առնել նրանց ընտանիքները ահաբեկ վիճակից ապահովելու, հակառակ դէպքում սպառնում էին թողնել դիրքերը և գնալ իրենց ընտանիքները պաշտպանելու համար։ Այժմ Անդրկովկ. Առ. Կոմիտէն հեռագրել է գեներալ Դէ-Վիտտին, որ նա յայտնի այդ սպաներին և զինուորներին, թէ թիկունքը ապահովելու համար բոլոր միջոցները ձեռք են առնուած։ Աւազակներին զսպելու համար ուղարկուած են զօրք և ռազմամթերք։

—Վ. Ա. Խարլամովի նախագահութեամբ կայացել է խորհրդակցութիւն պարենաւորման խնդրի շուրջը, որտեղ Լ. Լ. Բիչը զեկուցել է Հիւսիսային Կովկասի բերքի մասին, որն ընդհանրապէս միջակից ցածր է։ Միաժամանակ նա յայտնել է, որ Ռուսաստանից Հիւս. Կովկասից պահանջուել է 100 միլիոն պ. հացահատիկ, որը դժուար թէ կարելի լինի բաւարարել, գլխաւորապէս նրա համար, որ գիւղացիները չեն ուզում ծախել հացահատիկը։ Այս դրութիւնն ի նկատի ունենալով, զեկուցանողը նպատակայարմար է գտնում անմիջապէս ցուցակագրել տեղական հացահատիկները, կատարել պաշարի կանոնաւոր բաժանում և սահմանափակել հացի գործածութիւնը։

—Կովկ. բանակի կենտրոնի և զինւ., բանւ. և գիւղ. պատգ. գործադիր կոմիտէների փակ նիստում որոշուած է Կովկասում հակայեղափոխութեան դէմ կռուելու համար յատուկ յեղափոխական մարմին կազմել, որն արդէն անցած է գործի։

# Համաշխարհային պատերազմը

*Ռուսաց արեւմտեան ճակատում*՝ վերջին շաբաթուայ ընթացքին ռազմական աչքի ընկող փոփոխութիւն չի կատարուել. Թշնամու զօրքերը Ռիգայի գրաւումից յետոյ ամրանում են և նրանց առաջապահ զօրամասերի ու ռուս վերջապահ զօրքերի միջև կռիւ է։ Մեր առաջապահ զօրամասերը յամառ կռուից յետոյ օգոստոսի 30-ին գրաւեցին Պլդուդ լճից դէպի հարաւ գտնուած լեռնաշղթան և ամրացան Շկերտա-Սիլամուիժա գծի վրայ։

Օգոստոսի 31-ի պաշտօնական հաղորդագրութիւնից իմանում ենք, որ ռուսական զօրքերը Ռիգայի շրջանում առաջ են անցել։ Ծովամերձ շրջանում ռուսները գրաւել են Կուլիս գիւղը։ Պսկովի խճուղու հարաւային կողմը լատիշական բատալիոնները առաջ կռուից յետոյ գրաւեցին Պերնէ գիւղը. վերցուած են գերիներ և աւարներ։ Մեր առաջապահ զօրամասերը գրաւեցին Մոբիցբերգից, Վագէ-Դեսուրում-Շխերսուէն ագարակը։ Ճակատի միւս մասերում հրաձգութիւն է։

*Ռումանական ճակատում.*—Ոտդաուց քաղաքից դէպի հարաւ գտնուած շրջանում մեր զօրամասերը գրաւեցին Սոլկի հարաւային կողմի բարձունքը և թշնամու հակայարձակումը յետ մղելիս գերի բռնեցին երկու վաշտ. գերի են բռնուած 400 աւստրիացի, 12 սպայով, խլուած է 6 գնդացիր։

*Ֆրանսիական ճակատում.*— Օգոստոս 30-ի գիշերուայ ընթացքում մեր զօրամասերը յանկարծական յարձակումով Բոյմոնից արևելք վերցրին զինամթերք և գերիներ։ Մաասի աջ ափին յետ մղեցինք գերմանական գիշերային յարձակումները, ծանր կորուստներ պատճառելով թշնամուն։ Մեր գծերի տակ մնացել է թշնամու մօտ 1000 դիակ։ Շամպանիում մեր զօրամասերը ներս խուժեցին մինչև գերմանական 3-րդ գիծը։ Գերմանական գարնիզոնը մասամբ կոտորուած է, մասամբ գերի վերցուած. մենք պայթեցրինք շատ ամրութիւններ և վերցրինք մեծ քանակութեամբ ռազմամթերք։

*Անգլիական ճակատում.*—Օգոստ. 30—31-ին մեր զօրքերը նորից գրաւեցին 360 մետր գերմանական խրամատներ։ Թշնամու հակայարձակումները յետ են մղուած։ Մենք աջողութեամբ յարձակում գործեցինք Բիւլլեկուրից հիւսիս-արևելք և Լոմմարդզիւղէից հարաւ, ծանր կորուստներ պատճառելով թշնամուն։

*Իտալական ճակատում.*—Օգոստոսի 30-ին թշնամին յարձակում գործեց մեր դիրքերի դէմ։ Թշնամու կրած վերջին պարտութիւնից յետոյ բազմաթիւ զօրքեր է բերել այս ճակատում։ Իտալացիները վերջին կռիւների ընթացքում վերցրել են մօտ 30,000 գերի։

# ՊՈՍՏ-ԱՐԿՂ

*Սարիղամիշ.*— *Բժ. Ա. Տէր-Տովհաննիսեանին.*—Ձեր «Մտամոքս» յօդուածի միայն վերջին մասն ենք ստացել, սպասում ենք առաջին մասին տպագրելու համար. շնորհակալութիւն ձեր թափած ջանքերի փոխարէն։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ



Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1